# ԻՄ ՄԱՅՐԻԿԸ

ԼՅՈՒԴՎԻԳ ԴՈՒՐՅԱՆ



Նկ. ՎԱԶԵՆ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Կիրակի էլ թեկուզ լինի՝
Իմ մայրիկը շատ չի քնում,
Նա ամեն օր
Բոլորից շուտ է վեր կենում։
Բայց այս ի՞նչ է,
Ինն է ժամի,
Իսկ նա քնել է դեռ հանգիստ։
Ձայն եմ տալիս՝
Մայրի՛կ, վեր կաց,—
Ուշանում ես աշխատանքից։
Նա տնքում է,
Ասում հազիվ՝
Հիվանդ եմ շատ,
Բժիշկ կանչիր...
Ես լսափողն հեռախոսի
Իսկույն դնում եմ ականջիս։
Հավաքում եմ համարները...
Եվ խնդրում, որ բժիշկ գա տուն.




ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

*Ավտոբուսը լիքն էր, նստելու տեղ չկար, և նրանք կես ժամ ցնցվեցին ոտքի վրա, մինչև հասան ձիարշավարան ու ցած իջան։ Պերճը մի գլխով երկուսից էլ բարձր էր, և նա հերթի կանգնեց տոմսարկղի մոտ, թեև հերթում ընդամենը մեկ-երկու հոգի կային։ Տրիբունաները գրեթե դատարկ էին, բայց նրանք նստեցին ամենավերջին կարգում, ու Արտակը նայում էր, թե ինչպես մի մարդ, բռնած երկու ձիերի սանձից, դանդաղ տանում է վազքուղով։*

*— Ինչո՞ւ այսքան հեռու նստեցինք, հարցրեց Արտակը։ Նա առաջին անգամ էր լինում ձիարշավարանում։*

*— Այստեղից լավ է երևում, ասաց Պերճը,— եթե ներքևում նստենք, դիմացի վազքուղին չի երևա։*

*— Ձիերը դրանց վրայի՞ց են թռչելու,— Արտակը ցույց տվեց արգելքները։*

Դրա համար գոհ մլավում,
Պոչով շոյում է ինձ կատուն։
Ու քիչ հետո՝
Ջրնցում է զանգը դռան.
Մեր բժիշկն է —
Ճանաչում ենք արդեն նրան։
Հանում է նա պայուսակից
Սրտի զարկը լսող գործիք։
Պարզվում է, որ իմ մայրիկը
Մրսել է և այն էլ՝ սաստիկ...
Դեղ է գրում, որ նա խմի
Օրը հինգից վեցը գդալ.
Չի մոռանում հետո նաև
Շատ օգտակար խորհուրդներ տալ։
Աշխատում է իմ հայրիկը.
Տանը չկա ուրիշ էլ մեծ,
Ու մայրիկին,
Ուրիշ էլ ո՞վ,

Սկսում եմ ես խնամել։
Ու տալիս՝ եմ ես նրան կաթ,
Լավ ծածկում եմ, որ չմրսի,
Բաց եմ պահում օդանցքը միշտ,
Որ թարմ, մաքուր օդ գա դրսից։
Երբ մայրիկը առողջացավ,
Այդ օրն ուղիղ ութն էր մարտի.
Նրա համար իմ հայրիկը
Մի՜ հսկա փունջ բերեց վարդի։
— Իսկ ես, իսկ ես, — շշնջացի, —
Դեռ ոչ մի բան չեմ նվիրել...
Ուրախ ժպտաց իմ մայրիկը,
Ինձ սկսեց շոյել, սիրել,
Հետո քնքուշ նայեց, ասաց.
— Սխալվում ես, բալիկ ջան, դու։
Չէ՞ որ արդեն քո մայրիկին
Նվիրել ես առողջություն։



— Իհարկե, ես տակից չե՞ն անցնելու,— քմծիծաղեց Սոսը։ Նա երկրորդ անգամ էր գալիս ձիարշավարան և վստահ էր, որ ամեն ինչ գիտե։

— Այնքան էլ դժվար արգելքներ չեն,— ասաց Գևրճը։— Միջակ ձին էլ հեշտությամբ կհաղթահարի։ Դպրոցը թողնելու օրից Գևրճն հաճախ էր ձիարշավարան գալիս։

Հենց սկզբից Արտակին դուր եկավ սպիտակ ձին։ Նրա հեծյալը մեջքին «2» թվանշան էր կրում։ Հեծյալի դեմքը լավ չէր երևում, բայց Արտակը համոզված էր, որ դա քաջ ու գեղեցիկ տղա է։

Մրցությունն սկսվեց, և Արտակն ամբողջ սրտով ուզում էր, որ № 2 հեծյալը հաղթի։ Սկզբում սպիտակ ճակատով ձին երկրորդ տեղում էր ընթանում, հետո սկսեց առաջ անցնել և, հետևելով Գևրճի ու Սոսի օրինակին, Արտակն ամբողջ կոկորդով գոռում էր։ Երբ մրցողները երկրորդ շրջադարձն էին վերցնում, № 2-ն արդեն ընթանում էր առջևից, և Արտակի ուրախությունը չափ ու սահման չուներ։ Նա բոլորովին չէր կասկածում, որ սպիտակ ճակատով ձին է հաղթելու և նրան թըվում էր, որ մեջքին երկու թվանշան կրող հեծյալը, որ արագ ու համարձակ արշավում է բոլորի առջևից, ինքն է, որ կա։ Նա ուզում էր, որ առաջին տեղը սպիտակ ճակատով ձին գրավի, և ձին էլ առջևից էր գնում, բայց նախավերջին արգելքը հաղթահարելիս, ինչ-որ բան կատարվեց, ձին ետևի ոտքերով ընկավ ջուրն ու հեծյալի հետ գլորվեց փոսը։ Առջևի ոտքերով հենված փոսի եզրին, ձին ապարդյուն ջանք էր թափում, որ դուրս գա, իսկ այդ ժամանակ մյուս ձիերը թռչում էին նրա գլխավերևով։ Բոլոր ձիերն անցել էին, մրցությունն ավարտվել էր, երբ մոտ վազեցին մի քանի հոգի և հեծյալի հետ, որ արդեն դուրս էր եկել, ձիուն էլ հանեցին։ Բռնած ձիու սանձից, № 2-ն անցավ ամբիոնի առջևով, և երկուսն էլ թրջված



էին՝ թե՛ սպիտակ ճակատով ձին, թե՛ հեծյալը, որի գլխարկն ընկել էր ու թաց մազերից ջուր կաթում էր դեմքին։ Արտակը խղճաց նրանց ու այնքան տխուր էր, որ քիչ էր մնում լաց լիներ, ասես դա ինքն էր հոգնած ու հիասթափված անցնում տրիբունայի առջևով։

Մի քանի մրցումներ էլ եղան, բայց դրանք այլևս չէին հետաքրքրում Արտակին։ Նա նորից անհանգիստ էր։ Արտակն առաջին անգամն էր փախել դասերից և հիմա մտածում էր, որ դեռ կարող է վերջին դասերին հասնել։ Նա հազիվ դիմացավ, մինչև մրցումների ծրագիրն ավարտվեց, և դուրս եկան ու գնացին ավտոբուսների կանգառ։



— Մի ամբողջ դեռ մնացել է,— ասաց Պերճը,— կարող ենք գարեջուր խմել։— Նա կլիներ տասնվեց տարեկան և երկու-երեք տարով մեծ էր տղաներից։

Կրպակում Պերճը գարեջուր խմեց, իսկ Արտակն ու Սոսը մրգաջուր էին խմում։ Գարեջրի մեծ գավաթը ձեռքում, իսկ նա իրեն պահում էր ճիշտ այնպես, ինչպես կրպակի մոտ հավաքված մի քանի տղամարդիկ, Պերճն ասաց.

— Այսօրվա ծրագիրը շատ վատն էր։

— Սարսափելի վատ էր,— նրան ընդօրինակեց Սոսը։

— Ձիերն անպետք բաներ էին,— ասաց Պերճը։

— Ես դեռ այդքան վատ ձիեր չեմ տեսել,— ասաց Սոսը։

Արտակը շարունակ լուռ էր նայում։ Ավտոբուս չկար։

— Շաբաթ օրը հետաքրքիր կլինի,— ասաց գարեջուր խմող տղամարդկանցից մեկը։— Նոր ձիեր են բերել, սքանչելի բաներ են։

— Գիտեմ,— Պերճը դատարկել էր գարեջրի գավաթն ու սիգարետ էր վառել,— ինձ ասել են։ Անպայման կգանք։

— Իսկ սպիտակ ճակատով ձին կլինի՞,— հարցրեց Արտակը։

— Որ մեկը,— ճշտեց Պերճը։

— № 2-ը, որ ջուրն ընկավ։

— Հազիվ թե,— ասաց տղամարդկանցից մեկը։

— Կլինի,— ասաց Պերճը,— իհարկե կլինի։ Դուք մտածեք, թե ինչ եք փող ճարելու։

— Կճարենք,— Սոսն աչքով արեց թե՛ Պերճին, թե՛ Արտակին,— ինչպես այս անգամ ճարեցինք, այնպես էլ շաբաթ օրվա համար կճարենք։— Այդ նա էր իրենց դասարանցի Լուսիկի պայուսակից թռցրել ինքնահոսը, իսկ Պերճը վաճառել էր։

Ավտոբուսը եկավ, ու նրանք դարձյալ կես ժամ ցնցվեցին ոտքի վրա։ Հետո իջան ու, քանի որ դեռ ժամանակ կար, մի քիչ թափառեցին։ Արտակը գիտեր, որ վերջին դասին կհասնի, բայց այլևս չէր համարձակվում դպրոցում երևալ։ Նրանք մըտան տիր, հերթով կրակեցին։ Թիրախը պարում էր Արտակի աչքերի առաջ, նա ամենաքիչ միավորները հավաքեց և վճարեց երեսուն կոպեկ։ Երկրորդ անգամ էլ նա պարտվեց և այլևս փող չուներ։

— Ոչինչ,— Պերճը ժպտաց ու թփթփացրեց նրա թիկունքին։ Նա վճարեց Արտակի փոխարեն, և Արտակը շնորհակալ էր նրանից։

Ճիշտ ժամին Արտակը տուն գնաց։ Նա և Սոս բարձրացան իրենց փողոցի շենքերից մեկի ձեղ-

ճամպրուկը, Թարատոցից հանեցին փոշոտված պայուսակները և տուն գնացին։

Տանը Արտակը հարմար պահ բռնեց, որ ոչ ոք իրեն չլսի, և զանգ տվեց Ռուբիկին։

— Ինչու՞ չէիր եկել,— հարցրեց Ռուբիկը։

— Հիվանդ էի,— ասաց Արտակը,— դասերն ատամ։ Նրան թվում էր, որ Ռուբիկն ամեն ինչ գիտե։ Նրան թվում էր, որ ամբողջ դասարանն արդեն գլխի է ընկել, թե ովքեր են գողացել Լուսիկի ինքնահոսը և թե ինչու իրենք դպրոց չեն եկել։

Արտակը Ռուբիկի կողքին էր նստում և հաջորդ օրը դասի ժամանակ աչքը չէր հեռացնում Ռուբիկի գեղեցիկ ինքնահոսից։ Նրանք հերթապահ էին և դասամիջոցին բոլորին մինչև վերջին մարդը հանեցին դասարանից։ Իսկ երբ Ռուբիկը գնաց կավիճ բերելու, դռների մեջ կանգնած Սոսն ասաց.

— Այսօր քո հերթն է։

Արտակը բացեց Ռուբիկի պայուսակը, հանեց ինքնահոսն ու գրպանը գցեց։ Վերջին դասն էր. նա հույս ուներ, որ Ռուբիկը այսօր ինքնահոսի անհետանալը չի նկատի և այդպես էլ եղավ։ Նա Ռուբիկի հետ տուն չգնաց, թեև մինչև վերջին շաբաթը միասին էին գնացել, ասաց՝ որ ուրիշ տեղ է գնում, և Սոսի հետ գնաց Պերճին գտնելու։

— Վատ չէ,— ասաց Պերճը,— երեք ռուբլի տան։

— Ուրեմն շաբաթ օրը գնում ենք,— հարցրեց Արտակը։

— Անպայման,— ասաց Պերճը։ Շաբաթ օրը առավոտյան այստեղ կհանդիպենք։

— Լավ տղա է Պերճը,— երբ հեռացել էին, ասաց Սոսը։

— Լավն է,— ասաց Արտակը,— իսկ ինչու՞ է թողել դպրոցը։

— Պա՜, նրա շատ պետքն է դպրոցը։ Կաշխատի, գիշերայինում էլ կսովորի։ Նրա պես տղա չկա։ Բոլորն էլ վախենում են նրանից։

Արտակը մտածում էր սպիտակ ճակատով ձիու և նրա հեծյալի մասին։

Նա մտածում էր, որ սա առաջին ու վերջին անգամն է, այլևս չի կրկնվի։ Այլևս այդպիսի բան չի անի։ Սա վերջին անգամն է։ Միայն թե մեկ էլ տեսնի սպիտակ ճակատով ձիուն և Սոսի ու Պերճի առաջ ամոթով չմնա։ Իսկ երբ պառկեց քնելու, մտածում էր, որ հետո ամեն ինչ լավ կլինի։ Ոչ ոք չգիտե, որ ինքնահոսն ինքն է գողացել, և չեն էլ իմանա։ Սպիտակ ճակատով ձին կհաղթի, և ինքը մինչև դպրոցը չավարտի, այլևս ձիարշավարան չի գնա։ Ամեն ինչ լավ կլինի։ Չէ՞ որ ոչ ոք ոչինչ չգիտե։ Ուրեմն անհանգստանալու կարիք չկա։ Բայց քունը չէր տանում։



Հաջորդ օրը Ռուբիկը ամբողջ դասարանը ոտքի հանեց ու ինքնահոսն էր փնտրում։ Ոչ ոք չէր տեսել։ Լուսիկը խորհուրդ տվեց հավաքարարուհուն հարցնել, միգուցե նա է գտել։ Ռուբիկը վազեց հավաքարարուհու մոտ, և Արտակին մի պահ նույնիսկ թվաց, որ ինքնահոսը կարող է գտնվել։

— Չկա,— վերադարձավ Ռուբիկը,— ի՞նչ պետք է անեմ։

— Ինձ նման նորը կգնես,— ասաց Լուսիկը։

— Որտեղի՞ց ճարեմ այդքան փող։

— Ոչինչ, վատը կգնես,— ասաց Արտակը։ Նա փորձում էր չհասկանալ, թե ինչպես կարելի է մի ինքնահոսի համար այդքան հուզվել։

— Այդ ինքնահոսը ինձ նվիրել էին։

— Էլի կնվիրեն,— Արտակը կորցնում էր համբերությունը։

— Եթե իմանամ ով է վերցրել, ձեռքիցս չի պրծնի,— ասաց Ռուբիկը։



Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Սոսը ծիծաղեց, մի քանիսն էլ ծիծաղեցին։ Յոթերորդ դասարանցիների մեջ Ռուբիկը ամենափոքրն էր ու ամենաթույլը։ Ոչ ոք չհավատաց, որ նա կարող է որևէ մեկին ծեծել։

— Ուրեմն դու կասկածում ես, որ մեր դասարանից որևէ մեկն է վերցրել,— հարցրեց Սոսը։

— Չէ,— կմկմաց Ռուբիկը։

— Ով գիտե, որտեղ ես կորցրել,— քմծիծաղեց Սոսը։

Դասն սկսվեց, և Արտակը չէր կարողանում Ռուբիկին նայել և չգիտեր, թե ինչու բարկանում է նրա վրա։ Նա գիտեր, որ հենց այսօր էլ Ռուբիկը նոր ինքնահոս կգնի, և թող նորը հնի չափ լավը չլինի։ Նոր ինքնահոս գնելը Ռուբիկի համար մեծ բան չէ։ Բայց նա զգում էր, որ սրանից հետո չի կարողանալու Ռուբիկի հետ ընկերություն անել։ Երբեք։ Մի պատճառ կգտնի, կխռվի հետը, որպեսզի մինչև կյանքի վերջը նրա հետ չխոսի։

Ես ոչ ոքի վրա չեմ կասկածում,— նրա թևից քաշեց Ռուբիկը,— ուղղակի բերանիցս թռավ։

— Գիտեմ,— ասաց Արտակը։

— Ավելի լավ, իմ մտքով չի անցել, որ մեր դասարանից որևէ մեկը վերցրած կլինի։ Ով գիտե, որտեղ եմ կորցրել։ Հավատո՞ւմ ես։

Հավատում եմ,— ասաց Արտակը։ Երեկ № 2 հեծյալն էլ նույնն էր զգում, երբ սանձից բռնած անցնում էր արգելքների առջևով։

Արտակը չէր հիշում, թե ինչպես դասն ավարտվեց։ Նա իրեն դուրս գցեց դպրոցից՝ վազեց մինչև Պերճենց նրբանցքը։ Պերճը ձեռքերը գրպանում կանգնած էր մի քանի տղաների հետ։

— Ի՞նչ է պատահել,— հարցրեց Պերճը։

— Ինքնահոսը փախցրե՞լ ես,— Արտակի շունչը կտրվում էր։

— Ես չէ,— ասաց Պերճը,— հինգ ռուբլուց ավելի չեն տալիս։— Մյուսները նայում էին Արտակին։

— Մեկը կա, տասը ռուբլի է տալիս,— բարձրահասակ ու թիկնեղ Պերճի կողքին Արտակն իրեն չնչին էր զգում։

Ո՞վ է։

— Չես ճանաչի, մեկը կա,— նա նայում էր, թե ինչպես է Պերճի ձեռքը գրպանը մտնում։— Փողը դասերից հետո կբերեմ։— Նա իրեն ավելի չնչին զգաց։

Ինքնահոսը գրպանում, Արտակը որքան ուժ ուներ, վազեց դպրոց։ Իրեն դասարան գցեց զանգի հետ ու մտածում էր, թե ինչպես ինքնահոսն աննկատ Ռուբիկի պայուսակի մեջ դնի։ Ինքնահոսն այրում էր գրպանը, սիրտը խփում էր, և երբ հաջողվեց բոլորից թաքուն ինքնահոսը Ռուբիկի պայուսակը խցկել, նրան մի պահ թվաց, որ ավելի՜ հանգստով ձին երբեք չի ընկել։

Երբ վերջին դասից առաջ Ռուբիկը ցնծագին բացականչությամբ ինքնահոսը հանեց պայուսակից, նա ամենևին թեթևություն չզգաց։ Նա դարձյալ չէր կարողանում Ռուբիկին նայել։ Նա սպասում էր, թե ինչ է ասելու Սոսը, իսկ դասերից հետո տուն գնաց մենակ, թեև յոթը տարի շարունակ Ռուբիկի հետ էր տուն գնացել։ Նա սպասում էր, թե երբ է Սոսն իրեն մոտենալու։ Նա քայլում էր մենակ և շուտով նրբանցքի մոտ տեսավ Պերճին ու Սոսին։ Նա գիտեր, որ այդ է լինելու, վախենում էր, բայց գիտեր էլ, որ ուրիշ ելք չկա։

— Արի այստեղ,— ասաց Պերճը։

Նրանք երեքով մտան նրբանցք։

— Դու արդեն ամեն ինչ պատմե՞լ ես նրան,— հարցրեց Սոսը։

— Ոչ,— ասաց Արտակը,— նա ոչինչ չգիտե։

Պերճը խփեց նրա գլխին, և Արտակը խեղդվելով լաց եղավ: Նա ամաչում էր, վախենում էր և նոր հարվածից պաշտպանվելու համար բարձրացրեց պայուսակը: Բայց Սոսը չթողեց, որ Պերճը նորից խփի:

Գնա,—արհամարհանքով ասաց Սոսը:

— Մեկ էլ քեզ չտեսնեմ այս փողոցով անցնելիս,—Արտակի աչքին Պերճն ավելի բարձրահասակ էր դարձել:—Եթե մեկ էլ քեզ այստեղ տեսնեմ, նորից ծեծ ես ուտելու:

Արտակը միայն փողոցում կարողացավ հեկեկոցը զսպել: Նա լվացվեց, ապա նոր միայն տուն գնաց, բայց այտն ուռել էր և ցավեց ամբողջ գիշեր: Հաջորդ օրը Սոսը նրան չմոտեցավ ու չէին խոսում, իսկ դասերից հետո նա նորից մենակ տուն գնաց: Նա գնում էր մենակ և ամբողջ մարմնով դողում էր: Դեռ հեռվից նա տեսավ, որ նրբանցքի մոտ ոչ ոք չկա, բայց դողը չէր անցնում: Նա հասավ նրբանցքին և, ճանապարհը շարունակելու փոխարեն, մտավ նրբանցք: Նրա շունչը կտրվում էր, ոտքերը թուլացել էին, բայց երբ տեսավ Սոսին ու Պերճին, շարունակեց նրանց կողմը գնալ:

— Ետ դարձիր,—ասաց Պերճը:

— Քեզ հետ այլևս գործ բռնող չկա,—Սոսն արհամարհանքով թքեց գետնին: Արտակի շունչը դարձյալ կտրվում էր, և նա չէր կարողանում խոսել: Նա սպասում էր, թե երբ է Պերճը խփելու:

— Ետ դարձիր ու գնա,—նորից ասաց Պերճը:

— Չե՛ս խփելու,—վերջապես կարողացավ խոսել Արտակը:

— Եթե այդքան ուզում ես, ահա,—Պերճը խփեց որքան ուժ ուներ:

Արտակը հազիվ մնաց ոտքի վրա, և նրա աչքերը նորից արցունքներով լցվեցին: Բայց նրա համար արդեն միևնույն էր՝ էլի կխփեն, թե ոչ:

— Սոս,—ասաց նա,—եթե սրանից հետո դասարանից որևէ բան կորի, ես կիմանամ, որ դու ես արել:

— Կորիր աչքիցս,—ասաց Պերճը: Սոսը լռում էր:

— Սոս, ազնիվ խոսք, եթե մեկ էլ այդպիսի բան պատահի, ես ամեն ինչ կպատմեմ:

Պերճը ձեռքը նորից հանեց գրպանից, Արտակը սպասեց նոր հարվածի, բայց հարվածը տեղի չունեցավ, և նա շուռ եկավ ու գնաց: Այտն այդ գիշեր ավելի ուժեղ ցավեց, և պառկած տեղը նա մտածում էր, թե որքան լավ կլիներ, եթե սպիտակ ճակատով ձին չսայթաքեր, և հաղթեր մեջքին «2» թվանշան ունեցող հեծյալը:



«Պիոներ» ամսագրի 1967 թ. լավագույն նկարչական աշխատանքի մրցանակը շնորհվեց նկարիչ ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻՆ՝ Խ. Հրաչյանի «Չորս ոսկեգույն կոճակ» վիպակի նկարազարդման համար:



«Աշնան նկարը», «Անտառային հրաշք», «Մանկապարտեզ» բանաստեղծությունների համար բանաստեղծ ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԸ արժանացավ «Պիոներ» ամսագրի 1967 թ. լավագույն գրական ստեղծագործության մրցանակին:

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՄՐՐԿԱՀԱՎԸ



Փոքրիկ Ալյոշան շատ է հիշեցնում մեր Գիքորին, միայն այն տարբերությամբ, որ Գիքորը մեռավ՝ «մարդ դառնալու» երազանքը սրտում, իսկ Ալյոշան կարողացավ դիմանալ շատ ավելի դառը զրկանքների:

Ժողովուրդների բանտ էր այն ժամանակվա Ռուսաստանը, ուր միայն կալվածատերերն ու կապիտալիստները կարող էին երջանիկ ապրել: Իսկ բանվորների ու գյուղացիների բաժինը աղքատությունն ու թշվառությունն էր միայն: Ալյոշան ծնվել էր հենց այդպիսի ընտանիքներից մեկում: Դեռ չորս տարեկան էր նա, երբ հիվանդացավ խոլերայով: Այդ ծանր հիվանդությունը նա հաղթահարեց, բայց երիտասարդ հայրը վարակվեց նույն հիվանդությամբ ու մահացավ:

Մայրը իր որբուկին գրկած, Աստրախանից տեղափոխվեց Նիժնի-Նովգորոդ՝ հոր մոտ: Բայց Ալյոշայի պապը դաժան մարդ էր, և ընտանիքում հայհոյանքներն ու ծեծը սովորական երևույթ էին: Ալյոշային ծեծում էին անգթորեն և՛ պապը, և՛ խորթ հայրը, և՛ քեռիները: Մի անգամ նրան ծեծեցին սոճու ճյուղերից կապած խրձով, և հիվանդանոցում բժիշկը նրա մարմնից հանեց փայտի քառասուներկու մանր կտոր:

Եվ նույնիսկ այդ պայմաններում տղան լավ էր սովորում ու ստանում էր գովասանագրեր: Բայց ահա, երբ մայրն էլ մահացավ, տասնամյա Ալյոշան կորցրեց իր վերջին հենարանը և, փախչելով տնից, սկսեց ինքնուրույն կյանք վարել: Նա կոշկակարական արհեստանոցում աշակերտ եղավ, շոգենավի խոհանոցում՝ ամաններ լվացող, աշխատեց գծագրիչի մոտ, սրբապատկերների արհեստանոցում և ապա՝ հնոտիներ էր հավաքում, զբաղվում էր թռչնորսությամբ...

Պատանի հասակում տղան անասելի դժվարությամբ հայթայթում էր իր օրվա ապրուստը, պահում տատին, որին շատ էր սիրում, և միաժամանակ կլանված հետաքրքրությամբ անվերջ գրքեր էր կարդում: Գրքերն ուսուցիչ եղան նրա համար, իսկ չարքաշ կյանքը՝ համալսարան, և փոքրիկ Ալյոշան մի օր դարձավ մեծ գրող Մաքսիմ Գորկի:

Լինելով պրոլետար, բարձրանալով կյանքի հատակից, Գորկին իր ստեղծագործություններով արտահայտում էր աշխատավոր դասակարգի շահերը և նրանց պայքարի կոչում ցարական ինքնակալության դեմ: Հեղափոխության մրրկահավ էին անվանում Մաքսիմ Գորկուն, որովհետև իր «Մրրկահավի երգը», «Բազեի երգը», «Մայրը» և այլ ստեղծագործություններում նա երգում էր հեղափոխությունը: Եվ նա ինքն էլ իր հերոսների նման նետվում էր հեղափոխության փոթորկահույզ ալիքների մեջ:

Մաքսիմ Գորկին սովետական գրականության հիմնադիրն է: Նրա ստեղծագործությունները համաշխարհային հռչակ բերեցին մեծ գրողին: Գորկին սխրանքներով լի իր կյանքով նման է առասպելական հերոս Դանկոյին, որն իր սիրտը դարձրած փարոս՝ լուսավորում էր մարդկության ճանապարհը:

Ահա թե ինչու, այսօր ամբողջ աշխարհը երախտագիտությամբ նշում է մեծ գրողի ծննդյան հարյուրամյակը:

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Ծովի ալեհեր հարթության վրա
Ամպեր է ահա կուտակում քամին.
Ահեղ ամպերի և ծովի միջև
Ճախրում է հպարտ մրրկահավը՝
Թռչում է՝ մի սև կայծակի նման
Մերթ ալիքներին թևով դիպչելով,
Մերթ նետի նման ամպերին հասած
Ճչում է նա չոր — և խինդ են լսում
Ամպերը խիզախ թռչունի ճիչում.
Հնչում է ճիչում փոթորկի ծարավ.
Եվ զայրույթի ուժ. և կրքի հրդեհ.
Եվ հաղթանակի հավատք են լսում
Ամպերը նրա այդ ահեղ ճիչում.
Նվում են ճայերն ամպրոպից առաջ,
Սուզահավերը նվում են նույնպես. —
Սուզահավերին անհայտ է հավետ
Անհուն հրճվանքը կյանքի պայքարի.
Գոռ որոտներից սարսում են նրանք.
Հիմար պինգվինը թաքցնում է խեղճ
Գիրուկ մարմինը ժայռերի խորքում...
Եվ միայն հպարտ մրրկահավն է
Ճախրում համարձակ, խիզախ և ազատ
Ծովի ալևոր, ճերմակ փրփուրում։
Ավելի մռայլ ու ծանր են իջնում
Ամպերը ծովի հարթության վրա,
Եվ ալիքներն են երգում ու պարում՝
Թռչելով դեպի որոտը պայթող.
Ցասման պայքարում որոտն է թնդում.
Ալիքներն են հորդ՝ վիճում քամու հետ,
Եվ ահա հանկարծ գրկում է քամին
Ամպերի երամն անդուլ գրկանքով,
Եվ շպրտում է ամեհի թափով,
Վայրի բարկությամբ, ժայռերի վրա,
Փշրում է, ցրում, դարձընում փոշի
Նրանց զմրուխտե կույտերն ահագին։ —
Մրրկահավը ճախրում է ճիչով,
Կայծակի նման ամպերը ճեղքում —
Պոկում է թևով փրփուրը ջրի,
Ճախրում է ահա, ինչպես հզոր դև,
Սև անագորույն ոգի փոթորկի, —
Եվ ծիծաղում է և խուլ հեկեկում...
Որոտի ցասման. վրդովմունքի մեջ
Նա զգայուն դև — վաղուց է արդեն
Հոգնություն տեսնում։ Համոզված է նա,
Որ չեն պարուրի ամպերն արևին,
Չեն ծածկի ընդմիշտ, չեն ծածկի. օ. ոչ։ —
Ոռնում է քամին... Որոտը թնդում...
Կապույտ բոցի պես ամպերն են վառվում
Ծովի ալեկոծ անդունդի վրա —
Բռնում է ծովը կայծակի նետերն
Ու իր ահռելի ընդերքում մարում.
Կրակե կարմիր օձերի նման
Եվ գալարվում են. և կորչում ծովում
Այդ կայծակների ցոլքերը բոսոր։
— Փոթորիկն հիմա թինդով կպայթի...
Դա խիզախ. հպարտ մրրկահավն է
Ճախրում սլացող կայծակների մեջ,
Ահեղ աղմկող. հորդ ծովի վրա.
Դա հաղթանակի երգիչն է ճչում.
— Թող փոթորիկը ուժգնորե՛ն պայթի...

*Թարգմ. ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑԻ*




*Նկ. ՀՐԱՉՅԱ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ*



# ԳԱՂՏՆԻ ԴՌՆԱԿԸ



*ՎԻԳԵՆ ԽԵՉՈՒՄՅԱՆ*

Շա՛տ հին է այս պատմությունը:

Այն ժամանակ մեր Հայաստանում Ծաղկաբերդ անունով մի ամրոց կար: Իսկական ամրոց, որ կառուցված էր բարձր ու քարքարոտ բլուրի գագաթին, չորս կողմից շրջապատված քարե հաստ պարիսպներով ու աշտարակներով:

Պարիսպների ու աշտարակների վրա գիշեր-ցերեկ հսկող պահակներ էին կանգնած: Նրանք զինված էին նետ-աղեղով, սրով ու նիզակով, ձեռքներին՝ պղնձե սաղավարտ: Պահակները բացում էին ամրոցի դարբասը, եթե բարեկամ մարդիկ էին լինում եկողները:

Ամրոցից քիչ ներքև, խոր ու ժայռոտ ձորի միջով հոսում էին գետի փրփրած ջրերը: Եթե մեկը անցներ գետի մյուսափը, հետո ելներ դիմացի բարձր սարն ու քիչ էլ գնար, կհասներ մեծ ու հին մի քաղաքի, որ նույնպես պարիսպներ, աշտարակներ և ամուր դարբասներ ուներ:

Երբ թշնամիները հարձակվում և շրջապատում էին Ծաղկաբերդ ամրոցը, այդ մեծ քաղաքի զինվորները, լուրն ստանալով, իսկույն գալիս էին օգնության...

Փոքրիկ նկարիչ Սոմիկը Ծաղկաբերդ ամրոցում էր ապրում իր պապիկի, հայրիկի և քույրիկ Դինարիկի հետ:

Պապիկն ու հայրիկը նույնպես նկարիչներ էին: Նրանք երեքով գրքեր էին նկարազարդում: Իսկ քույրիկ Դինարիկը ներկեր էր եփում զանազան ծաղիկներից ու բույսերից: Որովհետև այն ժամանակ պատրաստի ներկեր չկային:

Այն ժամանակ գրքերն էլ ուրիշ տեսակ էին: Գրում էին ձեռքով՝ եղեգնյա գրչով, և բարակ կաշվից պատրաստած թերթերի վրա:

Հետո նկարիչները գրքերի լուսանցքները և բաց տեղերը լցնում էին տեսակ-տեսակ պատկերներով, գրում էին գեղեցիկ գլխատառեր: Նկարում էին մարդկանց, ծառեր ու ծաղիկներ, զանազան թռչուններ ու

կենդանիներ, գազաններ և ամեն ձևի զարդեր: Իսկ նկարվածը ծածկում էին ոսկե, կապույտ, կարմիր ու կանաչ, մի խոսքով՝ բոլոր վառ գույներով:

Ինչե՜ր չէին նկարում պապիկն ու հայրիկը. վառվռուն աքաղաղներ, կարմրոտիկ կաքավներ, հեքիաթային գազանիկներ... Եվ Մոմիկը նույնպես:

Մոմիկն ամենից շատ ծառ ու ծաղիկ և ոսկեթև, կարմիր-կապույտ խատուտիկ թռչնիկներ էր նկարում: Եվ կարմիր նուռ ու կապույտ երկինք: Հետո գառնուկներ, ուլիկներ, փոքրիկ հովիվներ: Ու ծաղկած, կանաչ գիհ-գիհ ժայռեր, ինչպես իրենց ձորի քարն ու ժայռը:

Պապիկն ու հայրիկը աշխատում էին առավոտից մինչև ուշ գիշեր: Մոմիկը միայն ցերեկն էր նկարում:

— Գնա՛, գնա քնի՛ր,— մութն ընկնելիս ասում էր հայրիկը Մոմիկին,— երբ մեծանաս՝ գիշերն էլ կնկարես:

— Դու էլ քնիր, թոռնիկս,— իսկույն ասում էր պապիկը Դինարիկին:

Իսկ իրենք՝ պապիկն ու հայրիկը, չէին քնում: Նրանք վառում էին ձեթի ճրագը և շարունակում էին նկարել:

Անկողնում պառկած, Մոմիկն ու Դինարիկը դեռ երկա՜ր նայում էին պապիկի ու հայրիկի կռացած մեջքերին: Ուրիշ բան չէր երևում: Ու եթե կես գիշերին արթնանում էին, նորից տեսնում էին նրանց՝ թեքված իրենց գեղեցիկ և դժվար նկարների վրա...

Մի անգամ այդպես կես գիշերին Մոմիկն ու Դինարիկը արթնացան ճիչ ու աղմուկից: Տան դուռը բաց էր: Դրսից լսվում էին դեպի ամրոցի պարիսպները վազող մարդկանց աղաղակ, ձիերի խրխինջ ու դոփյուն, սրերի, վահանների զնգոց...

Պապիկն ու հայրիկը թողել էին իրենց գործը. նրանց ձեռքերին սրեր ու վահաններ կային: Եվ Մոմիկն իսկույն հասկացավ, որ թշնամիներ են հարձակվել իրենց ամրոցի վրա:

Մոմիկը դուրս թռավ անկողնուց և կպավ հայրիկից.

— Ես էլ կգամ ձեզ հետ... ինձ էլ տարեք...

— Ոչ մի տեղ չես գնա,— բարկացավ հայրիկը:— Հագնվիր: Դինարիկը քեզ կօգնի, իսկ դու, գրքի վերջին թերթն է մնացել, քո ծաղկած նռնենիներն ու թռչնիկները կնկարես այդտեղ...

Դրսից կանչում էին հայրիկին ու պապիկին: Նրանք էլ շտապում էին գնալու, ամրոցը պաշտպանելու: Հայրիկը մռայլ նայեց երեխաներին, կիսատ մնացած գրքին և օրորեց գլուխը:

— Չեղա՜վ,— ասաց հայրիկը,— ոչ ոք չի կարողացել դուրս գալ ամրոցից, լուր տալ քաղաքի զինվորներին: Թշնամիները բոլոր կողմերից շրջապատել են մեզ...

— Ինչպե՜ս իմաց տաս,— նույնպես մռայլ ասաց պապիկը:— Ասում էի՝ պարսպի մեջ գաղտնի դուռ պիտի սարքել, գետնի տակով գաղտնի ճանապարհ փորել մինչև ձորը... Այդ որ լիներ, հիմա մեկնումեկը առանց նկատվելու դուրս կգար ամրոցից, կգնար-կհասներ քաղաք, կիմանային այնտեղ, օգնության կգային...

Հրաժեշտ տալով երեխաներին՝ պապիկն ու հայրիկը գնացին պարիսպների վրա կռվելու, թույլ չտալու թշնամիներին գրավելու իրենց Ծաղկաբերդը:

Իսկ այնտեղ՝ պարիսպների մոտ, ուժեղանում էր կռիվը: Թշնամի զինվորները բոլոր կողմերից նետեր էին արձակում և գերաններով խփում էին պարսպին, դարբասին: Եվ պարիսպների վրայից ամրոցի պաշտպանները նույնպես նետեր էին արձակում դեպի թըշնամին, նիզակներ էին նետում նրանց գլխին...

Մոմիկը հասկանում էր, թե ինչ կլինի եթե թշնամի զինվորները կարողանան մի տեղ քանդել պարիսպը կամ ջարդել դարբասը և լցվել ամրոցը: Նրանք կսպանեն ամրոցի բոլոր պաշտպաններին, պապիկին ու հայրիկին: Նրանք կխլեն իրենց նկարած գեղեցիկ գիրքը, կքանդեն բոլո՜ր, բոլոր տները...

Դինարիկը կուչ էր եկել Մոմիկի կողքին և կամաց լաց էր լինում: Իսկ Մոմիկը հոնքերը հավաքած, լուռ նստել էր գրքի վերջին թերթի առջև, որտեղ պիտի ծաղկած նռնենիներ և ոսկեթև թռչնիկներ նկարեր, այդպես էր ասել հայրիկը:

Բայց նա չէր ուզում ծառեր ու թռչուններ նկարել: Նա ուզում էր, որ իրենց ամրոցը գաղտնի դռնակ ունենար, գետնի տակով փորված մի գաղտնի ճանապարհ մինչև ձորը: Այդ դեպքում ինքը դուրս կգար թշնամիներով օղակված ամրոցից և, գետն անցնելով, ելնելով դիմացի բարձր սարը, կհասներ մոտիկ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ



մեծ քաղաքի պարիսպներին, այնտեղ ապրողներին կկանչեր օգնության...

Այսպես էր մտածում Մոմիկը: Եվ գրքի վերջին էջի վրա ձեռքն արագ-արագ նկարում էր իր ուզածը: Բարձր ու ամուր մի պարիսպ, հետո այդ պարսպի մեջ երկաթե գաղտնի մի դռնակ, որ հազիվ էր երևում ծաղկած ընձենիների ետևում...

Երբ Մոմիկն ամեն ինչ նկարել էր արդեն, վեր կացավ կանգնեց, կամաց կանչեց Դինարիկին.

— Լաց մի՛ լինի, քույրիկս...— ասաց,— ես միայն օգնության կկանչեմ ու վազելով ետ կգամ: Իսկ դու նստիր այստեղ, սպասիր ինձ:

Եվ զարմացած ու վախեցած Դինարիկը տեսավ, թե ինչպես Մոմիկը բացեց իր նկարած գաղտնի դռնակը, վազեց դռան ետևում երևացող քարե աստիճաններով՝ ոտք դրեց գետնի տակ փորված ճանապարհին... Եվ դռնակը ծածկվեց իսկույն:

Մինչև առավոտ Ծաղկաբերդ ամրոցի շուրջը շարունակվում էր կռիվը:

Մինչև առավոտ թշնամի զինվորները փորձում էին քանդել պարիսպները, ջարդել դարբասն ու մտնել ամրոց:

Մինչև առավոտ կուչ եկած Մոմիկի նկարած պարսպի առջև, նրա նկարած գաղտնի դռան մոտ, Դինարիկը կամացուկ լաց էր լինում և սպասում էր ու սպասում:

Իսկ առավոտյան կռվի աղաղակը փոխվեց ուրախության կանչերի: Դինարիկը վազեց դուրս և տեսավ հայրիկին ու պապիկին, ամրոցի պաշտպաններին, մոտիկ քաղաքից օգնության եկած զինվորներին... Նրանք հաղթել էին թշնամիներին և հեռու էին քշել ամրոցից ու Հայաստանի սահմաններից:

Դինարիկը ետ վազեց տուն ու, երբ մոտենում էր գրքի վերջին թերթին, բացվեց Մոմիկի նկարած գաղտնի դռնակը, և [illegible]ա հոգնած ներս եկավ ու իր ետևից կամաց ծածկեց դուռը:

Հենց այդ ժամանակ տուն մտան պապիկն ու հայրիկը: Տեսնելով, թե Մոմիկն ինչ է նկարել գրքի վերջին երեսին, հայրիկը շատ բարկացավ.

— Ես քեզ ի՞նչ էի ասել, որտե՞ղ են ծաղկած ընռենիներն ու թռչնիկները:

Միայն պապիկը չբարկացավ.

— Ոչինչ,— ասաց,— երևի պետք էր հենց ա՛յդ նկարել: Թող մնա:

Դինարիկն ուզում էր պատմել, թե ինչ էր եղել գիշերը, բայց Մոմիկը ձգեց նրա թևից.

— Սո՛ւս... Մի՛ ասա, թող ոչ ոք չիմանա իմ ու քո գաղտնիքը...



ՏՈՂԻԿ.
— Բարև՜, բարև՜,
Հայրիկ արև,
Հենց զարթնեցի, ես իսկույն
Նայեցի դուրս...Նորից ձյո՜ւն.
Ձմռան գրկի մեջ մարմանդ
Մրափում են լեռ ու հանդ,
Մանր են նստել ձյուները,
Սառցի մարմար սյուները

# ՁՆՀԱԼ

(Պատկեր)

ՀԵՆՐԻԿ ԱՐԹԵՆՅԱՆ

Ձմռան ձեռքով նկարվել,
Ջրհորդանից են կախվել...
Մշուշն, ինչպես մի ոստայն,
Տղարշել է գյուղ, ոստան...

ԱՐԵՎ.
— Ողջո՜ւյն, Տողիկ,
Իմ շողշողիկ,
Գարնան դեսպան առաջին,
Իջիր շուտով
Պարաշյուտով
Արագածի սառ լանջին:

ՁՅՈՒՆԻԿ.
—Արի մոտս, Տողիկ ջան,
Հերիք մնամ ես անբան,
Եկ ինձ ծալիր, ծավալիր,
Լավ հալիր,
Որ ոտք առնեմ ես առույգ,
Վազեմ, ընկնեմ հորդ առուն,
Սարի գլխից քաղաք գամ,
Աշխարհ տեսնեմ մի անգամ...

ԱՐԵՎ.
—Ա՛յ ձյունիկներ,

Սիրունիկներ,
Հենց նայեմ ձեզ, հալվեք լուռ,
Իսկույն թողեք սար-բլուր,
Գիլ-գիլ՝ գլոր իջեք վար
Գառնան վազքով խելագար...

ՁՅՈՒՆԻԿ.
—Հենց նայեցիր, ծալվեցի ես,
Քո ժպիտից հալվեցի ես։
Քույրիկներս էլ ահա ինձ պես

## ԼԵՌՆԵՐՈՒՄ

Նկ. ԲԱԳՐԱՏ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

Արցունք-արցունք կլորվեցին,
Սարից ներքև գլորվեցին...

ԱՐԱՅԻ ԼԵՌ.
—Ճերտ-ճերտ փուլ է գալիս ձյունը,
Լալիս է իր խնդությունը,
Գոլորշին է ժայթքում կրկին,
Տաք հալոցք է և իմ կրծքին,
Ձնաշորս եմ ահա հանում,
Որ գարուն գա Երևանում...

ՁՅՈՒՆԻԿՆԵՐ.
— Հալոցիկներ դարձած խելառ՝
Գիլ-գիլ, գլոր իջնում ենք վար,
Գառնան կանաչ դրոշն առած՝
Սլանում ենք կրկին առաջ,
Մեր Արագած սարի գլխին
Թողած ձմռան դրոշը հին,
Ձմռան շունչը վտարելով
Ու ձնծաղկե բիլ տառերով
Ճանապարհին մեր երկարուն
Փորագրում ենք «գարո՜ւն, գարո՜ւն»։



ՏԻՐՎԱԼԻ — Նկ. ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑԻ

### Իններորդ գլուխ

### ԿՈՒՅՐ ԱՌԱՋՆՈՐԴԸ

*Ծերունի Տոհմապետին թաղելուց հետո Կրեկն ու եղբայրները երկար տարիներ խաղաղ կյանք վարեցին։*

*Մի գիշեր որսորդների խումբը անտառից հաղթանակով էր դուրս գալիս։ Առաջատար ջոկատի հետախույզները հանկարծ կանգ առան։ Ճանապարհից քիչ հեռու ընկած էր մի ծերունու դիակ, իսկ նրա շուրջը գլխիկոր նստել էին երեք հոգի. մեկը տղա էր, իսկ մյուսները՝ կանայք։ Մի քանի քայլ նրանցից հեռու սպանված ընկած էր հսկա մի արջ։*

*Հետախույզները ազդանշան տվին։ Մոտեցան որսորդները։ Գերիները վախեցած ծնկի եկան և բարձրաձայն աղերսեցին։ Լճի բնակիչները նրանց լեզուն չհասկացան։ Այդ ժամանակ գերի տղան ձեռքի շարժումներով առաջնորդից կյանք խնդրեց։*

*Լսելով գերի պատանու խոսքերը, Կրեկը տեղում քարացավ, իսկ Ույուգը և Դեյը զարմացած միմյանց նայեցին։ Ի՞նչ պատահեց քաջարի եղբայրներին, ինչո՞ւ այդպես դողահար հուզվեցին։*

*Այն նախապատմական օրից, երբ Կրեկն ու եղբայրները ընկել էին լճի բնակիչների մոտ, արդեն*

Սկիզբը՝ «Պիոներ» 1967 թ. №№ 8, 9, 10, 12, 1968 թ. 1, 2

հիանալի տիրապետում էին նրանց լեզվին: Սակայն մայրենի լեզուն նրանք երբեք չէին մոռացել: Միմյանց հետ եղբայրները խոսում էին իրենց լեզվով: Եվ ահա երկար տարիներ անց, նրանք անծանոթ մարդու բերանից լսում են իրենց հարազատ, քարանձավի բնակիչների լեզուն:

Մթության մեջ դժվար էր տարբերել դժբախտ գերիների դեմքերը, բայց եղբայրները չէին կասկածում, որ իրենց առջև կանգնած են հեռավոր հայրենիքից եկած մարդիկ:

— Գուցե դու կհասկանաս նրանց լեզուն, Կրեկ, դիմեց առաջնորդը:

Կրեկը մոտեցավ ոտարային և սկսեց մայրենի լեզվով հարցուփորձ անել: Կանայք, վախից ու հոգնածությունից հյուծված, չէին կարողանում պատասխանել: Պառավն ավելի դիմացկուն էր և հանդուգն: Նա գլուխը վեր բարձրացրեց և Կրեկին վաղուց ծանոթ լեզվով պատմեց:

— Մեր խաղաղասեր ու մեծ տոհմը երկար ժամանակ ապրում էր Լեռան լանջին՝ քարանձավի մեջ: Տարիներ առաջ մեզ հարևան եկավ անհայտ, բայց կատաղի մի ցեղ: Նրանք վայրենի էին, անընդհատ, արյունռուշտ, թվով ավելի շատ և անընդհատ հարձակվում էին մեզ վրա: Մենք միշտ միս ունեինք, իսկ նրանք՝ ոչ. կրակը պահպանել անգամ չգիտեին: Վերջապես մի օր նրանք ամբողջ ցեղով հարձակվեցին և մեր բոլոր քաջ որսորդներին սպանեցին: Կենդանի մնացած ծերունիներից մի քանիսը վերցրին կանանց ու երեխաներին և փախան հեռու, սակայն թշնամին անողոք էր և արյան ծարավի: Նրանք շարունակեցին հետապնդել մեզ, և ահա ամբողջ տոհմից կենդանի ենք մնացել չորս հոգի՝ ծերունին, այս երկու կինը և ես: Խեղճ ծերունին առաջնորդում էր մեզ, բայց այնքան հյուծված էր, որ անվերջ խնդրում էր սպանել իրեն:

— Իսկ ինչո՞ւ, — հարցրեց Կրեկը:

— Չէր ուզում դժբախտներիս վրա ավելորդ ծանրություն դառնալ. նա կույր էր:

— Կո՞ւյր...

Այո, նա մեր ցեղից չէր, իսկ թե որտեղից էր հայտնվել, մենք էլ չգիտենք:

— Բայց ու՞մ էր պետք կույրը, ինչո՞ւ էիր նրան խնամում:

— Ծերունին խոստացել էր մեզ ցույց տալ դրախտային մի աշխարհ, ուր բնակիչները ազատ և կուշտ ապրում են լճի վրա:

— Մի՞թե կույրը տեսել է՞ մեր լիճը, — հարցրեց Կրեկը:

Քարանձավի նախկին բնակիչը շարունակեց կիսատ մնացած պատմությունը.

Մենք կերակրում և խնամում էինք կույր ծերունին ու անընդհատ նկարագրում մեզ շրջապատող անտառները, գետերը, լանջերը, իսկ նա լսում էր և ուղղություն տալիս մեզ: Նա մեծ սիրով ու երազանքով էր խոսում այն ժողովրդի մասին, որին պիտի անպայման հանդիպեինք: «Լճի բնակիչները, — ասում էր նա, — ձեզ ապաստան և ուտելիք կտան, հավատացեք ինձ: Գաղտագողի շատ եմ թափառել նրանց բնակավայրի շրջակայքը, բայց այն ժամանակ մենակ չէի և պարզ տեսնում էի արեգակի լույսը: Ես միշտ նախանձել եմ լճի խաղաղասեր և կուշտ բնակիչներին: Վերջապես մի օր որոշեցինք հարձակվել և բռնի ուժով տիրել նրանց ունեցվածքը, բայց այդ չհաջողվեց. մեր համարյա բոլոր ռազմիկները սպանվեցին և խեղդվեցին լճի ալիքներում: Մի քանիսը միայն փրկվեցին, որոնցից մեկը ես եմ»:





— Բայց նրանց հետապնդեցին հալածողները,— բացականչեց կրակոտ Կրեկը։ — Եվ միակ կենդանի մնացածին բռնեցին ու հանեցին աչքերը։

Ճիշտ ես ասում, այդպես է եղել,— ասաց գերին,— բայց ես տեսնում եմ, որ դուք հենց լճի բնակիչներից եք, որոնց մասին պատմում էր ծերունին։ Ես ձեր գերին եմ, ինչպես ուզում եք վարվեք ինձ հետ, միայն խնայեք այս երկու աղջիկներին։ Մինչ ձեր գալը արջի հետ կռվի բռնվեցինք, կույր ծերունին սպանվեց, իսկ ես կենդանի եմ մնացել։

— Ո՞վ ես դու,— հարցրեց առաջնորդը։

— Ես ցեղի առաջնորդի որդիներից մեկն եմ, անունս՝ Օմո։

Կրեկը և եղբայրները հանկարծ բացականչեցին.

— Օմո՞...

— Այո, Օմո։

— Նա՞ է, Օմո՞ն, մեր հարազատը,— Կրեկի ականջին փսփսաց Ույուգը։

Բայց Կրեկը դյուրահավատ չէր, որոշեց մանրամասն ստուգել և խիստ ձայնով դիմեց գերի պատանուն.

— Իսկ ովքե՞ր են այս կանայք։

— Իմ քույրերը։

— Նրանց անուննե՞րը։

— Մար և Օն։

Կրեկն այլևս չդիմացավ և ուրախացած բացականչեց.

— Օմո՛, սիրելի եղբայր, մի՞թե դու չճանաչեցիր Ույուգին, Դեյլին և ինձ...

Եղբայրներն ու քույրերը գրկախառնվեցին և ջերմ համբուրվեցին։ Ապա Կրեկը մոտեցավ առաջնորդին.

— Իմ հարազատներին այստեղ է բերել մեր թշնամին, բայց այժմ նա մեռած է։ Եղբայրս՝ Օմոն խիզախ և հավատարիմ տղա է, նա ազնվորեն կծառայի մեր ցեղին, երաշխավորում եմ։

— Հավատում եմ, Կրեկ,— ասաց առաջնորդը,— դու միշտ մտահոգվել ես մեր ցեղի ուժեղությամբ։ Հարազատներդ թող մնան մեզ մոտ։

Արդեն գիշեր էր։ Որսորդները հանգիստ քնել էին։ Չէին քնել միայն վաղուց միմյանցից անջատված հարազատ եղբայրներն ու քույրերը։ Նրանք խարույկի շուրջ նստած պատմում էին իրենց գլխով անցածը։

Օմոն նորից կրկնեց իրենց ընտանիքի ոչնչացման պատմությունը։



— Կրեկ, սիրելի եղբայր, ճակատագրական կռիվը դեռ չէր սկսվել, երբ մեր հայրը քեզ ներեց և շատ ափսոսաց ձեր բացակայության համար։

Հետո հորիզոնում բացվեց արշալույսը։

Լճի բնակիչներն արթնացան, առաջնորդը ճանապարհ ընկնելու հրաման տվեց։ Մի քանի ժամ հետո նրանք մոտեցան կապույտ և գեղեցիկ լճին։

Քարանձավի նախկին բնակիչների տանջալից և թափառաշրջիկ կյանքը ընդմիշտ վերջացավ։

Թարգմ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ԳԵՎՈՐԳՅԱՆԻ

# ՔԱՋ ՏՂԱՆ

ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ

Փոքր է տղաս՝ վեց տարեկան,
Բայց ուժեղ է ինձնից անգամ,
Այնքան ուժեղ, այնքան ուժեղ,
Որ չես գտնի և ոչ մի տեղ։
Չի նայում իր բոյ ու բուսին,
Թռչում է մեծ եղբոր ուսին,
Գետնով տալիս, նստում վրան,
Ծիծաղում է իմ լավ տղան։
Իսկ միջնեկին բռնելուն պես,
Ցած է նետում անմիջապես։
Մեծ եղբայրը՝ գետին ընկած,
Հարց է տալիս.
— Բա որ հանկարծ
Մի մեծ առյուծ ելնի քո դե՞մ...
— Առյուծն ի՞նչ է, ես կհաղթեմ։
— Վա՜հ,— զարմացավ եղբայրը մեծ,
Իսկ միջնեկը իրեն կորցրեց։
— Ա՜յ տղա, ո՞նց...
— Ես կհագնեմ մի զույգ ձեռնոց,
Կառնեմ մի լավ երկար պարան,
Պինդ կկապեմ ոտք ու բերան,
Գետնով կտամ և արդեն վերջ,
Ի՞նչ կմնա առյուծի մեջ։—
Էլ ինչ ասեմ ես սրա դեմ,
Առյուծին էլ հաղթեց արդեն,
Բայց մի փոքրիկ մուկ տեսնելիս,
Իմ քաջ տղան ո՜նց է լալիս...



## ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ԼՈՒՍԻՆ, ԸՆԴՈՒՆԻՐ ՄԵԶ

Հրթիռակայանում բազմություն էր հավաքվել: Մարդկանց հրելով՝ մեկը առաջ էր գնում:

— Ինչ ես հրում, հանգիստ տեղդ մնա,— բարկանում էին մարդիկ:

— Մեր հարևանի տղան է փորձարկողը,— ու փոքրիկ Կարոն ավելի մոտեցավ: Այնտեղ, իրոք, իրենց հարևան Համլետն էր կանգնած: Նա զբաղված էր ինչ-որ լուրջ գործով:

— Ուշադրությո՜ւն, տիեզերք է ուղարկվում «Եղվարդ-1» հրթիռը:

Համլետը հոսանքը միացրեց, և հրթիռը պոկվեց տեղից: Մարդիկ վերև նայեցին, հրթիռը պտտվում էր լուսնի շուրջը:

— Ուռա՜ա՜,— բացականչեցին բոլորը միաբերան. Կեցցե՛ն Համլետն ու Բարեղամը, ընկեր Մարկոսյանը...

Դուք, հավանաբար, գուշակեցիք, որ խոսքը իսկական հրթիռակայանի ու հրթիռի մասին չէ: Փորձարկումը կատարվում էր Աշտարակի շրջանի Եղվարդ գյուղի միջնակարգ դպրոցում, հանդիսատեսներն էլ իրենք՝ աշակերտներն էին: Բայց փոքրիկ Կարոն համոզված էր, որ իրենց հարևանի տղան իսկական հրթիռ է արձակել...

— Այս սարքը պատրաստել են 10-րդ դասարանցիներ Համլետ Կարապետյանը և Բարեղամ Արշակյանը,— ասում է ընկեր Մարկոսյանը: Այժմ Համլետը կպատմի սարքի մասին:

Եվ պատանի կոնստրուկտորը սկսում է բացատրել:

— Ավտոմատ հրթիռային կայանում ավտոմատ

ուղեղի դերը կատարում է ժապավենը, որն հագցըված է ատամնավոր անիվներին: Անիվները պըտըտվում են, որի հետևանքով պտտվում է նաև ժապավենը, և հրթիռակայանի բոլոր գործողությունները կատարվում են ավտոմատ կերպով: Հրթիռակայանն ինքն իրեն իջնում է, պահեստից վերցընում հրթիռը և կանգնեցնում նրան թռիչքի պատրաստ վիճակում: Հրթիռը ձողին կպած է մնում մագնիսի միջոցով: Հոսանքը միացնելիս մագնիսը գործում է և ցնցում հրթիռը: Այդ ցնցումը օգնում է հրթիռին՝ տեղից հեշտությամբ պոկվելու: Հրթիռի ցածի մասում՝ վառելանյութի բաքում, լցված է վառոդ՝ մանրացած ածխի հետ:

Երբ ավտոմատ կերպով էլեկտրականությունը միանում է, պարույրը շիկանում է: Դրա հետևանքով վառոդը բռնկվում, տաքացնում է հրթիռը, և այն թռչում է: Այս ամբողջ ժամանակամիջոցում ռադիոլոկատորը պտտվում է, ալիքներ է որսում:

Այնուհետև կատարվում է մյուս գործողությունը: Հրթիռը բարձրանում է վեր և պտտվում Լուսնի շուրջը: Լուսինը տեղադրված է կայանի վերևում:

— Հապա տիեզերքը, Լուսինը ո՞նց են կախված մնում. հարցրեց աշակերտներից մեկը:

— Դրանք ամրացված են առաստաղին և հրթիռակայանին միանում են էլեկտրական լարերով:

Տիեզերքը՞ արհեստանոցի առաստաղին: Հետաքրքիր է, չէ՞:

... 1000 աշակերտ կա 50-ամյա այդ դպրոցում, 1000 մանկական գլուխներում այնքա՜ն հետաքրքիր մտքեր են ծնվում: Հիանալի գործեր են ստեղծվում Եղվարդի դպրոցում, բայց դպրոցն ամենից շատ կարելի է գովել հիմա ձեռքերի խմբակի և 12 ավիամոդելիստների համար:

Հիշու՞մ եք ռետինե շարժիչով մեր մոդելը, — ասում էր Վալինակը Հրաչիկին, վեց րոպե մընաց օդում: Երեք տարի առաջ էր, Կիրովականում: Մենք դիպլոմ ստացանք:

Դպրոցի արհեստանոցում զրույցը շարունակվում է: Ընկեր Մարկոսյանը շատ է ափսոսում.

— Եթե Սոս Եղիազարյանն ու Միշա Հովհաննիսյանն այստեղ լինեին, կպատմեին զոհված մարտիկների հիշատակին կառուցված աղբյուր-հուշարձանի մասին: Դա իրենք էին պատրաստել և անվանել էին Հեղնար աղբյուր, քանի որ աղբյուրը պատրաստված էր Հեղնար աղբյուրի սկզբունքով:

Աղբյուր-հուշարձանը ցուցադրվել է Երևանում, տեխնիկայի տանը և պատվոգիր շահել: Իսկ նրա հեղինակներն այժմ սովորում են. Սոսը՝ պոլիտեխնիկական ինստիտուտում, Միշան՝ համալսարանի ֆիզիկայի ֆակուլտետում:

Երեխաները ոգևորվել են, ուզում են պատմել «Գիտելիքների համալսարան», «50-ամյակ» հրաշալի ցուցատախտակների մասին, ուրիշ շատ սարքերի մասին...

Բազմաթիվ, մեկը մյուսից հրապուրիչ պլաններ ունեն: Ուզում են տիեզերանավ ուղարկել ուղիղ Լուսին:

Լուսին, պատրաստվիր ընդունելու նրանց:

*ԼԻԴԱ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ*

*Լուսանկար՝ ԶԱՎԵՆ ԲՇՏԻԿՅԱՆԻ*






## ԿԱՆԱՉ ՇԱՆԹԱՐԳԵԼՆԵՐ

Կարծվում է, որ ծառերի մեջ կայծակից ամենից քիչ տուժում է բարդին: Այս ծառի պսակը հարվածից հետո գրեթե անփոփոխ է մնում: Սա հիմք է տալիս եզրակացնելու, որ բարդիները հիանալի շանթարգելներ են: Կայծակի հարվածը կաղնուն ամբողջովին զրկում է պսակից, իսկ ծփենին բարդու նման շատ քիչ է տուժում:

Հաստատված է նաև, որ երիտասարդ տանձենիները հարվածից հետո արագ ապաքինվում են, այն դեպքում, երբ ծեր տանձենիները սովորաբար չորանում են: Հետևաբար, երիտասարդ ծառերն ավելի լավ են դիմադրում էլեկտրականությանը, քան ծերերը:

Այժմ գտնում են, որ բնակելի տների մոտ տնկված բարդիները հաջողությամբ կփոխարինեն շանթարգելներին:



## ԵՐԿՆՔԻՑ ԻՋԱԾ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ

Ճապոնիայի Հոկայդո կղզում ապրում է մի ցեղ, որը մինչև օրս էլ մնում է համաշխարհային պատմության մեծագույն հանելուկներից մեկը: Դրանք այներն են: Ներկայումս նրանց թիվը հասնում է 12 հազարի: Այները խոսում են չափազանց յուրահատուկ լեզվով և լրիվին եվրոպական արտաքին ունեն: Այներն ունեն սպիտակ, կարմրաթուշ դեմք, կապույտ աչքեր և ալիքաձև սև մազեր: Այներին հատուկ է հոծ մազածածկույթը, ինչպես դեմքի, այնպես էլ մարմնի վրա: Նրանք աշխարհի ամենաթավամազ մարդիկն են համարվում:

Մի քանի մարդաբանների կարծիքով, այները պատկանում են մի ցեղախմբի, որը հնագույն ժամանակներում բնակվել է Հյուսիսային Ասիայում:

Մի քանի այլ գիտնականներ, ընդհակառակը, գտնում են, որ այները Հոկայդոյի բնիկ ժողովուրդների վերջին ներկայացուցիչներն են և Հոկայդոյում են ապրում յոթ հազար տարուց ոչ պակաս:

Այներն իրենց ծագման մասին բոլորովին այլ կարծիք ունեն: Նրանց ծերունիները գտնում են, որ իրենց ժողովուրդը եկել է երկնքից: Սասա գետի հովտում նույնիսկ մի հուշարձան կա, որը նշում է այն տեղը, որտեղ իբր ոտք է դրել առաջին այնը, երկնքից երկիր իջնելիս:

## ԱՄԵՆԱՓՈՔՐԻԿ ԿԱՊԻԿՆԵՐԸ

Հարավային Ամերիկայի ջունգլիներում ապրում են թզուկ կապիկներ՝ աշխարհի բոլոր կապիկներից ամենափոքրերը: Թեև նրանք երկու անգամ փոքր են սովորական սկյուռից, բայց այնուամենայնիվ լավ են մագլցում ծառերի վրա, քանի որ աջնի և ետևի վերջավորությունների վրա ունեն սուր, ետ ծալված ճանկեր: Ցատկոտելով ծառից-ծառ, այդ փոքրիկները կերակրվում են պտուղներով, բողբոջներով, զանազան միջատներով և թռչունների ձվերով: Թզուկ կապիկները հաղորդակցվում են թռչունների ծլվլոց հիշեցնող ձայներով, իսկ վտանգի պահին բարձրաձայն ծղրտում են:

Մի գերմանացի սիրող-բնախույզ իր տանը երկու այդպիսի կապիկներ է պահում: Ամեն օր նա հետևում է նրանց վարքագծին ու ապրելակերպին:

Սկզբում կապիկները շատ վախկոտ էին և շփոթված կծկվում էին վանդակի անկյունում: Հետո վանդակում արկղ կախեցին, և կապիկները թաքնվում էին այնտեղ, երբ որևէ մեկը մոտենում էր նրանց: Կապիկներին կերակրում էին կտրատած բանանով, խնձորներով և տանձերով, տալիս էին նաև անձրևաորդեր, որը նրանք առավել հաճույքով էին ուտում: Շուտով կապիկները ընտելացան անազատ կյանքին և այնպես բարեկամացան մարդկանց հետ, որ հնարում էին ամեն տեսակի զվարճալի խաղեր՝ ցատկոտելով ներկաների գլուխների վրայով:

Կապիկների տերերի համար մեծ անակնկալ եղավ, երբ մի քանի ամիս անց տեսան երկու փոքրիկների: Նրանք այնքան ամուր էին կառչել իրենց մոր մորթուց, որ ցած չէին ընկնում նույնիսկ նրա ամենահամարձակ թռիչքների ժամանակ:

Շուտով երեխաների խնամքն իր վրա վերցրեց հայրը, հիմա փոքրիկներն ավելի հաճախ նրա վրա էին նստում և մոր մոտ էին գնում միայն սնվելիս: Երկու ամիս անց փոքրիկներն ար-

գեն համարձակվում էին ինքնուրույն գրոսանքներ կատարել. Կապիկները հիանալի զարգանում էին: Նրանք ծնողներից համարձակ էին, քանի որ ծննդյան օրից ընտելացել էին մարդկանց ներկայությանը: Այնուամենայնիվ փոքրիկները թույլ չէին տալիս իրենց բռնել ձեռքով, թեև համաձայնում էին երկար ժամանակ նստել որևէ մեկի ուսին: Վեց ամսական հասակում նրանք արդեն իրենց ծնողների չափ էին:

# ԽՍՏԻՎ ԿԱՆՈՆՆԵՐՈՎ ՄԵՆԱՄԱՐՏ

*Թունավոր մի օձ ներխուժում է մի ուրիշ օձի սեփականության սահմանները: Ագրեսիայի զոհը, բարկությունից լեզուն հանած, կարծրացած պոչով սպառնագին աղմուկ է բարձրացնում և սողում անկոչ հյուրին ընդառաջ:*

*Դրությունը վտանգավոր է, ընդհարումն՝ անխուսափելի: Ճակատագրական կարող է լինել մի խայթոցն անգամ կամ ատամի թողած փոքրիկ քերծվածքը: Նաև օձերը զգայուն են իրենց սեփական թույնի ներգործության նկատմամբ, և սովորաբար իրենց որսն ուտում են այն ժամանակ միայն, երբ զոհի մարմնի մեջ մտած թույնը տարրալուծվում է:*

*Խայթոցը, իհարկե, կլիներ հակառակորդից ազատվելու ամենաարագ միջոցը: Եվ եթե ագրեսորը լիներ որևէ ուրիշ ցեղի ներկայացուցիչ, նրա դատաստանը, անկասկած, կարճ կլիներ: Բայց ցեղակցի նկատմամբ թունավոր օձը թունավոր ատամները երբեք գործի չի դնում: Օձերն սկսում են կռվել մենամարտի խստիվ կանոնների համաձայն: Սկզբում նրանք սողում են իրար մոտ, մինչև որ մոտենան գլուխ-գլխի: Այնուհետև, կիսաշրջան են կազմում, պոչերը հյուսում իրար, իսկ գլուխները գետնից մոտ կես մետր վեր են բարձրացնում: Այդ վիճակում նրանք մի պահ կարծես քարանում են: Բայց ուշադիր նայեք, կնկատեք, որ դա շոյանք չէ, այլ ուժեղ պայքար: Երկու հակառակորդներն էլ օդ ներշնչելով ուռեցնում են թոքերը և ամբողջ ուժով սեղմում են միմյանց այնքան, մինչև զսպանակի նման հանկարծակի ետ ընկրկեն: Գետին ընկնելով օձերն աշխատում են արագորեն նորից գլուխները բարձրացնել և շարունակել ուժերի չափումը:*

*Նման մի քանի ռաունդից հետո, կռվողներից մեկնումեկին վերջապես հաջողվում է մյուսի գլուխը կռացնել գետնին և այդ դրությամբ հակառակորդին պահել մի քանի վայրկյան: Պայքարն ավարտված է: Հաղթողը թույլ է տալիս պարտված թշնամուն փախուստի դիմել, իսկ ինքն առանց հապաղելու սողում է դեպի իր բույնը:*

*Չլիներ թունավոր օձերի վեճերի լուծման «ասպետական սկզբունքը», հազիվ թե այդ սողունները այսօր գոյություն ունենային:*

*Թունավոր օձերը բացառություն չեն: Նաև ուրիշ կենդանիներ են կռվելիս մարմնական և ոչ մի վնասվածք իրար չեն հասցնում: Որքան վտանգավոր է զենքը, այնքան ավելի խիստ են մենամարտի կանոնները: Բոլոր կենդանիների մենամարտերն էլ ընդհանուր շատ նմանություն ունեն: Հակառակորդները, սևեռուն հայացքով նայելով միմյանց աչքերի մեջ, դանդաղորեն մոտենում են իրար: Դրա հետ մեկտեղ աշխատում են որքան հնարավոր է ազդեցիկ տեսք ընդունել, կատարում են սպառնալից շարժումներ, որպեսզի թե՛ իրենց արիանան, թե՛ սարսափեցնեն թշնամուն:*

*Երբեմն մենամարտը հենց դրանով էլ ավարտվում է: Ավելի թույլը ընդունում է իր պարտությունը և նահանջում կռվի դաշտից: Օրինակ, աքաղաղների մենամարտը: Կռվողները փետուրները ուռեցրած, կուրծքը դուրս ցցած, փքված գնում-գալիս են: Նա, որի տեսքն ավելի ազդեցիկ է լինում, դառնում է հաղթող: Հարավային Ամերիկայում ընակվող կռնչակապիկները նույնպես սահմանափակվում են դատարկ սպառնալիքներով, որքան հնարավոր է մեկը մյուսից ավելի բարձր աղաղակ բարձրացնելով: Կուսական անտառներում այդ սարսափելի համերգները լսվում են մի քանի կիլոմետրի վրա առավոտյան ու երեկոյան: Հատկապես ուժեղ պայքարություն է*



գործում գետաձիների մենամար-տը։ Նրանք մտնում են, ինչ-պես ասում են՝ բիթ-բիթի, բա-ցում են հսկայական երախները և զայրացած փչում իրար վրա։

Եթե միայն սպառնալիքնե-րով ցանկացած արդյունքի չեն հասնում, սկսվում է մենամար-տի երկրորդ շրջանը։ Ահա, թե ինչպես են իրենց պահում այդ դեպքում եղջերուները։ Երկու թշնամիները բախվում են կրծք-կրծքի, եղջերավոր գլուխները հպարտորեն բարձր պահած։ Նրանցից յուրաքանչյուրը աչքի պոչով հետևում է հակառակոր-դի շարժումներին։ Հանկարծ, ասես հրամանով, նրանք կանգ են առնում, շրջվում դեմ-դիմաց և, գլուխները խոնարհելով, բա-կրում են կռիվը։ Բայց եղջե-րուն երբեք չի ցանկանում վի-րավորել դիմացինին։ Նրանք խա-չաձևում են եղջյուրները և այդ-պես սկսում են կռիվ։ Եթե ա-ռաջին հանդիպումը վերջանում է անարդյունք, ուրեմն այդ բո-լորը կրկնվում է նորից։ Եվ այդ ռաունդները կրկնվում են այն-քան մինչև որ մենամարտող-ներից որևէ մեկն ընդունում է իր «ոչ լիարժեք» լինելը։

Պատահում է, որ շատ ուժեղ հուզմունքից հակառակորդներից մեկը դեմ-դիմաց կանգնելու փո-խարեն սխալմամբ հետևով կամ կողքով է կանգնում դեպի թըշ-նամին։ Այդ դեպքում վերջինս չի օգտվում նրա սխալից, և մե-նամարտը սկսվում է այն ժա-մանակ միայն, երբ հակառա-կորդը պատրաստ է դրան։

Քարայծերը, որոնք իրենց եր-կար, դաշույնի պես սուր եղ-ջյուրներով ծակում են շատ գազանների, երբեք այդ վտան-գավոր զենքը չեն գործադրում իրենց ցեղակիցների նկատ-մամբ։

•

# ԿՈՐՍՎԱԾ ԽԻՂՃԸ

ՌԱՖԱՅԵԼ ՇԻՐՈՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Ես չգիտեի ինչ բան է խիղճը: Չգիտեի, ես էլ խիղճ ունեմ, թե ոչ: Ինչ իմանայի, հազիվ տասը-տասնմեկ տարեկան տղա էի: Բայց շուտով մի դեպք պատահեց, և ես ամեն ինչ իմացա: Իմացա, որ ես էլ խիղճ եմ ունե-ցել ու կորցրել եմ: Չեմ հորինում, չէ: Ասում եմ այն, ինչ իրոք եղել է:

Մեր տան կողքին կոշիկ վերանորոգելու մի փոքր արհեստանոց կար: Այնքան փոքր էր, որ երբ երեք մարդ ներս էին մտնում, մեկը պիտի ոտքի վրա մնար. նստելու տեղ չկար, նեղվածք էր:

Մեջտեղում դրված էր մի ցածրիկ սեղան, որի վրա խնամքով դասավորված էին պանապան գործիքներ, տարբեր չափսերի մանր մեխեր, սոսինձ, մեղրամոմ, թելերի կծիկներ և տասնյակ այլ մանրուքներ: Սեղանի տակ կիտված էին կաշվի մեծ ու փոքր կտորներ, դիմա-ցի անկյունում դրված էր նավթավառը, կողքին՝ նավթ-ամանը, ջրով լի դույլը, թիթեղյա այլ ամաններ, ավել: Պատերի տակ՝ հատակին, շարված էին կանանցի, տղա-մարդու և երեխաների կոշիկներ, նորոգված ու չնորոգ-ված:

Արհեստանոցի միակ աշխատողը ուստա Միլիտոսն էր, լիքը-լիքը, վիզը քիչ ներս ընկած, տարեց մի մարդ: Աշխատանքի պահին նա կծկվում, գունդ էր դառնում սեղանի մոտ, ասես հատակաբուն կաղնու կոճղ լիներ:



Միայն մեխ խփելիս մեջքը քիչ ուղղում էր:

Ուստա Միխիտարը շատ լսում էր, քիչ խոսում: Աշխարհի անցուդարձով հետաքրքրվում էր, բայց նա իր սեփական աշխարհն ուներ, իր ուրույն կարծիքը կյանքի և մարդկանց մասին:

— Մարդը մի անգամ է աշխարհ գալիս,— ասում էր նա,— և այնպես պիտի անի, որ բարի անուն թողնի իրենից հետո:

Բարի գործեր անելով էլ, երևի, կոշտացել էին նրա ձեռքերը, դեմքին խորշոմներ էին առաջացել: Երբ այդ մասին երբեմն կատակով ակնարկում էին հաճախորդները, նա քթի տակ խորամանկորեն ժպտում էր և ասում.

— Ձեռքերն ինչ, տես սիրտը չկոշտանա, հոգին չբորբոսնի...

Միշտ բարի, մեղմ ժպիտը երեսին՝ ուստա Միխիտարն ընդունում ու ճամփու էր դնում հաճախորդներին: Եվ նրանք հեռանում էին գոհ սրտով:

Ասում էին, որ Միխիտարի հայրն էլ կոշկակար է եղել: Նրան ես չեմ տեսել: Աչքս բաց եմ արել՝ արհեստանոցում ուստա Միխիտարն է եղել:

Ամառվա շոգերին շատ-շատ մեր բակն էր գալիս, ծորակից սառը ջուր խմում, լվացվում էր, զովանում, հետներս կատակներ անում: Բոլորիս ճանաչում էր անուններով, գիտեր, թե մեզանից ով է լավ սովորում և ով վատ: Հետաքրքրվում էր մեր գնահատականներով, ամառային և փոխադրական քննություններով, խրախուսում, հանդիմանում, խրատում էր: Մենք այնքան էինք մտերմացել, որ առանց քաշվելու նրանից ամեն բան խնդրում էինք, ու նա չէր մերժում: Մեկի հեծանիվն էր կարգի բերում, մյուսի սահնակը, մեխ էր պետք՝ տալիս էր, կոշիկի կրունկն էր պոկվել՝ կպցնում էր, պայուսակի բռնակն էր կտրվել՝ կարում էր: Ամեն ինչ ձեռքից գալիս էր: Եվ ինչ էլ որ անում էր, սրտով էր անում, չէր տրտնջում: Շատ անգամ էլ՝ առանց դրամի:

Ձմռանը ուստա Միխիտարը նավթավառի մոտից չէր հեռանում: Արհեստանոց մտնելուն պես հագնում էր գոգնոցը, նավթավառը մեջտեղ քաշում ու իր գործն անում: Ուստա Միխիտարը չէր էլ մտածում արհեստանոցն ուրիշ կերպ տաքացնելու մասին: Նա վարժվել էր դրան: Իսկ երբ նավթը վերջանում էր, դիմում էր մեր բակի տղաներին: Է, ինչ աներ խեղճ մարդը, օգնող չուներ: Նավթի կրպակն էլ փողոցի վերջում էր: Տղաներն այդ բոլորը հասկանում էին: Լավության պակաս չէին մնում:





Մի անգամ դպրոցից տուն էի գալիս, տեսնեմ ուստա Միխիտարը արհեստանոցի դռան առաջ կանգնած դեսուդեն է նայում: Իսկույն գլխի ընկա, որ նավթը վերջացել է: Ինձ տեսնելուն պես ուրախ բացականչեց.

— Ինչ լավ եղավ եկար, Գուրգեն ջան, նավթավառս հանգել է, մի քանի լիտր նավթ հասցրու, քեզ մատաղ:

— Իսկույն,— ասացի ես:

Վազելով մտա բակը, պայուսակը պատշգամբից ներս գցեցի ու վերադարձա: Ուստա Միխիտարը տվեց ինձ նավթամանը, փող և ասաց.

— Դեհ, թռի՛ր, տղաս, թռի՛ր:

Արհեստանոցից դուրս գալիս ինձ հանդիպեց Թորգոմը, մեր բակի տղաներից:

— Նավթի՞,— ժպտալով հարցրեց նա:

— Ըհը՛,— պատասխանեցի ես:

— Գնանք,— ասաց Թորգոմը,— ես էլ եմ այդ կողմը գալիս:

Գնացինք:

Ճանապարհին Թորգոմն ասաց, որ նոր կինոնկար է եկել. «Զիգմունդ Կոլոսովսկի»: Տոմսի համար ջարդոց է. հարկավոր է տեսնել հենց այսօր, առարկություն չընդունող շեշտով ավելացրեց Թորգոմը: Ես ասացի, որ հիմա փող չունեմ, մնա վաղը: Թորգոմն ասաց, որ ինքն ունի, բայց երկու տոմսի չի բավականացնի: Ինչպես էլ լինի պետք է փող ճարել ու գնալ: Թե չէ վաղը ի՞նչ հետաքրքրություն... Ապա, մի պահ լուռ մնալով, դարձավ ինձ.

— Ուստա Միխիտարը քանի՞ լիտրի փող է տվել:

— Ութ,— ասացի ես:

— Իսկակա՛ն է,— ուրախ բացականչեց Թորգոմը գյուտ անողի պես:— Չորս լիտր նավթ, մնացածը ջուր: Չորսը՝ ուստային, չորսը՝ մեզ:

— Ինչպե՞ս թե,— անհանգստացած վրա բերեցի ես:

— Մեծ բան չէ,— կատակի տվեց Թորգոմը,— մի անգամ էլ թող պակաս լինի, ի՞նչ կա որ:

Երկար վիճեցինք, բայց իզուր: Թորգոմը ավելի համառ գտնվեց: Դեհ, նա ճարտար լեզու ուներ. մի երկու տարով էլ ինձնից մեծ էր. Ես տեղի տվեցի: Թորգոմն իսկույն ձեռքիցս առավ փողը, նավթամանը ու մտավ կրպակ: Հետո դուրս գալով գնաց դիմացի բակը, ծորակից ջուր ավելացրեց ու, նավթամանը ինձ տալով, ասաց.

— Դու գնա, ես վազեմ տունս:

Նավթամանը ձեռքիս քայլում էի և մտքումս նախատում ինձ թուլամորթությանս համար: Ի՞նչ պիտի պատասխանեմ, եթե ուստա Միլիտոսն իմանա, իմանան ընկերներս, դպրոցը, ու հորս՝ականջն ընկնի...

Փողոցում ցուրտ էր, բայց ես չէի զգում: Տաք քրտինք էր տվել վրաս, դեմքս այրվում էր: Ինձ պաշարել էին հակասական մտքեր: Մի պահ ինձ թվում էր, որ ես մեղք չունեմ, Թորգոմն է արել ամեն ինչ... Բայց Թորգոմն ի՞նչ գործ ունի այստեղ: Չէ՞ որ ուստա Միլիտոսը փողն ինձ է տվել, ինձ է խնդրել նավթ բերել: Նա Թորգոմի երեսն էլ չի տեսել:

Արհեստանոցի դռան մոտ կանգնեցի, շունչ առա, և, ինձ հավաքելով, թափով ներս մտա: Ուստա Միլիտոսը ուրախացած վեր կացավ, նավթամանն առավ ձեռքիցս ու ասաց.

— Ապրե՛ս, տղաս, շնորհակալ եմ:

Ապա մոտեցրեց նավթավառը և սկսեց նավթ լցնել մեջը: Հիմա ամեն բան կբացվի և ես կխայտառակվեմ: Փորձեցի դուրս փախչել: Բայց ուստա Միլիտոսը, նկատելով որ ես անհանգիստ եմ, ասաց.

— Երևում է, լավ մրսել ես, դեմքդ սփրթնած է: Հե՞րթ էր:

— Ոչ,—նվաղած ձայնով ասացի ես ու դուրս եկա:

Սիրտս ճմլվում էր, մղկտում:

* * *

Թորգոմը չգիտեմ ինչ կերպ տումս էր ճարել, և մենք հենց առաջին օրը դիտեցինք նոր ֆիլմը, որը երկուսիս վրա էլ ուժեղ տպավորություն թողեց:

Վերադարձին մենք անվերջ դրա մասին էինք խոսում, կարծիքներ փոխանակում: Մեզ հիացրել էր Զիգմունդ Կոլոսովսկու խիզախությունը, հնարամտությունը, սառնասրտությունը, անգամ ամենավտանգավոր պահերին: Ա՜յ թե մարդ նրա նման լինե՜ր...



Երբ տուն հասանք, աչքս ընկավ արհեստանոցին ու ինձ նորից համակեց տագնապը: Ես Թորգոմին անկեղծորեն պատմեցի իմ հոգեկան ապրումները, բայց նա քմծիծաղ տալով, բարեկամաբար ձեռքը ուսիս դրեց և ասաց.

— Մի՛ մտածիր, բան էլ չկա: Գնա, հանգիստ դասերդ սովորիր:

Իսկ ես հանգիստ չունեի, տանջվում էի, նախանձում էի ընկերներիս, որ անհոգ վազվզում, խաղում, թռչկոտում էին: Գլխիս մեջ շարունակ նույն հարցն էր՝ ինչո՞վ կվերջանա այս ամենը: Աշխատում էի ուստա Միլիտոսի աչքին չերևալ: Արհեստանոցի մոտով անցնելիս սիրտս դող էր ընկնում: Ասում են, որ այդպես է լինում գողերի հետ: Բայց ես հո գող չե՞մ, մտքումս ասում էի ինքս ինձ: Թորգոմը հո գող չէ՞:

— Քեզ խաբել են, տղաս,— մի քանի օր հետո բակում հանդիպելով ինձ, ասաց ուստա Միլիտոսը:— Նավթն օծել են ջրով, այսինքն՝ ջուր են խառնել:

— Ջո՞ւր, ինչպես թե,— տագնապահար կմկմացի ես:

— Այո, աղբյուրի մաքուր ջուր: Վաճառողը, երևում է, խիղճ ասած բանը չունի: Նավթի հետ խիղճն էլ է վաճառել:— Ապա ժպտալով ավելացրեց.— Չե՞ս հավատում, գնանք տես:

Ամոթից կարմրած, գլուխս կախ հետևեցի նրան: Ուստա Միլիտոսը բերեց նավթամանը, միջի ջուրը շուռ տվեց առվի մեջ ու դարձավ ինձ.

— Հոգ մի անի, տղաս, դու մեղք չունես, ի՞նչ իմանայիր, թե կխաբեն:

Ուստա Միլիտոսը նավթամանը ձեռքին մտավ արհեստանոց: Ես ամոթից քար կտրած մի պահ կանգնած մնացի տեղումս, ապա, ուշքի գալով, հուզված վազեցի տուն: Ականջներիս մեջ դեռ հնչում էին ուստա Միլիտոսի խոսքերը:

Տանը միայն մայրս էր, նոր էր եկել աշխատանքից ու ճաշի պատրաստություն էր տեսնում: Ես պատմեցի ամբողջ եղելությունը: Մայրս վշտացավ, խիստ հանդիմանեց ինձ էլ, Թորգոմին էլ: Եվ ապա մեղմացած ավելացրեց.

— Գնա ուստա Միլիտոսի մոտ և խոստովանիր մեղքդ: Նա բարի մարդ է, կների:

Այդպես էլ արեցի:

Ուսերիցս ասես մի ծանր բեռ ընկավ:




## ԲԱԺԱՆԻՐ ՀԱՎԱՍԱՐ ՄԱՍԵՐԻ

Վարպետի մոտ մի աշակերտ բերեցին: Վարպետը խորամանկ ժպտաց, ապա՝ նորեկին տալով այստեղ պատկերված գծագրին ճիշտ նման մետաղյա մի թիթեղ, ասաց. «Սրանից տասնը-



վեց միատեսակ տառ կտրիր, այնպես, որ թիթեղից ոչ ավելանա, ոչ էլ պակասի...»

Հնարամիտ աշակերտը ամոթով չմնաց:

Ասացեք՝ ի՞նչ տառ կտրեց նա և ինչպե՞ս:

Առաջարկի՝ ԿԱՐԼԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆԻ

## Հանելուկներ

* * *

Երգում է նա օրնիբուն
Կրծքին մամուռ մի ժայռի,
Նրան և՛ մենք ենք սիրում,
Ե՛վ գազանները վայրի: (ջրվեժ)

ԺԵՆՅԱ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

* * *

Թ-ով պտուղ եմ ծառի,
Խ-ով նման եմ ժայռի,
Մ-ով լույսից հալածված,
Ձ-ով գործիք հնացած,
Իսկ երբ չկան տառերն այս,
Թիվ եմ դառնում ես մի պարզ: (թութ, խութ, մութ, ձութ, ութ)

ՄԱՐԻՆԵ ՊԵՏՐՈՍՅԱՆ

Մարտունու շրջ. Ներք գյուղի ութամյա դպրոցի 7-րդ դաս.



Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 3 մարտ 1968 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ



„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41.
Հեռախոսներ՝ 2-44-83, 2-68-16, 2-59-06.

ՎՖ 06450: Պատվեր՝ 359: Տպաքանակ՝ 55000: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 14.III.1968 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91: Գինը՝ 10 կ.

10 կ.
Ինդեքս 77806



## ԱՆՁՐԵՎ ՈՒ ՁՅՈՒՆ

*ՎՐԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ*

Այս ի՞նչ օր է. այս ի՞նչ օր՝
Մեկ անձրև է ու մեկ ձյուն.
Ու մեկ հանկարծ հանդ ու ձոր
Ծով են հագնում ոսկեգույն:

Բայց թե նորից անարգել
Իջնում է լուռ ձյունը պաղ,
Ոչ կարող ես չմշկել.
Ոչ էլ խաղալ մի նոր խաղ:

Այս ի՞նչ օր է, այս ի՞նչ բան.
Մարդ չգիտե՝ ինչ անի,
Երբ ոչ ձյունն է ձյան նման.
Ոչ էլ անձրևն անձրևի:

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ